ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



СОДЕРЖАНИЕ



Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

Адрес редакции— Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 2
ՀՈՒՆՎԱՐ
1965

ՀԿՊ կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

## ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ

*Գորիսի շրջանի շատ ագիտկոլեկտիվներ ունեն աշխատանքի հիանալի փորձ։ Դրանցից մեկը Տեղ գյուղի ագիտկոլեկտիվն է, որի օգնությամբ ագիտատորները հետաքրքիր ու բովանդակալից են դարձնում ունկնդիրների հետ ունեցած զրույցները, մասսայական-բացատրական աշխատանքը կապում կոլտնտեսության առջև դրված կոնկրետ խնդիրների կատարման հետ։ Նրանք լայնորեն տարածում են առաջավոր կոլտնտեսականների փորձը, զարգացնում մարդկանց մեջ ընկերասիրության և փոխօգնության զգացմունք, սեր ու հարգանք հանրօգուտ աշխատանքի նկատմամբ։ Այստեղ ագիտատորների համար հաճախակի կազմակերպվում են սեմինար պարապմունքներ, որտեղ քննարկվում են ագիտացիոն աշխատանքի բարելավման հետ կապված առանձին հարցեր, կատարվում զրույցի թեմաների ընտրություն, հրահանգավորում և այլն։ Այդ բոլորի շնորհիվ ագիտատորներն ավելի լավ են աշխատում։ Օրինակ, Տեղ գյուղի ագիտատոր Ա. Բաղդասարյանը։ Նա ոչ միայն կոլտնտեսականներին սիստեմատիկաբար պարզաբանում է պարտիայի և կառավարության որոշումները, նրանց առաջնահերթ խնդիրները, այլև լավ գիտի գյուղատնտեսության էկոնոմիկան։ Այս տարվա գարնան սկզբներին ագիտատորը իր հերթական զրույցներից մեկի թեման դարձրեց ջրաշինարարության հարցը։ Նա կոլտնտեսականներին պատմեց իրենց գյուղի ոռոգվող հողատարածությունները հետագայում ընդարձակելու հնարավորությունների մասին։ Իբրև օրինակ նշեց, որ կարելի է օգտագործել Շորին ձոր կոչվող հանդամասում անօգուտ հոսող ջրերը և դրա բազայի վրա Խանդակ և Կալուն հանդամասերը դարձնել ոռոգելի։ Ունկնդիրները ջերմորեն*

պաշտպանեցին ագիտատորի առաջարկությունը։ Ագիտատորը, խոսելով այդ հարցի մասին, համոզիչ հաշվարկների հիման վրա պարզաբանեց իր առաջարկության տնտեսական արդյունավետությունը։

— Այդ գետի ակունքում պետք է կառուցել մեծ ջրավազան,— ասում է ագիտատորը,— և այդտեղից ոչ մեծ ծախսով, մեկ կիլոմետրի վրա ջրանցքով ջուրը տեղափոխել Խանդակ ու Հալուն բլուր կոչվող հողամասերը և դրանք ոռոգելի դարձնել։ Ագիտատորի և ունկնդիրների աշխույժ զրույցից պարզվում է, որ ջրովի կդառնա 100 հեկտար հողամաս, որտեղ կարելի է մշակել տեխնիկական կուլտուրաներ, տնկել պտղատու այգի, իսկ ձմռան ամիսներին այդ ջուրը տեղափոխել կոլտնտեսության գոմերը և ջրել անասուններին։

Ապա ագիտատորը, աչքի անցկացնելով իր բլոկնոտում կատարված հաշվումները, շարունակում է.

— Եթե միայն այդ տարածությունների վրա մշակվի ծխախոտ, ապա մեր կոլտնտեսությունը երկու տարվա ընթացքում կվերականգնի կատարված ծախսերը, իսկ հետագա տարիներին կոլտնտեսությունը կարտադրի շատ էժան գյուղատնտեսական մթերքներ։

Առաջ քաշված հարցերի շուրջը ագիտատորը խորհրդակցեց կոլտնտեսության ղեկավարների հետ։ Այդ հարցը լայն քննարկման ենթարկվեց պարտիական ժողովում, իսկ այնուհետև՝ կոլտնտեսականների ընդհանուր ժողովում։ Պարտիական կազմակերպությունը, բոլոր կոլտնտեսականները ջերմորեն ընդունեցին ագիտատորի առաջարկությունները։

...Շինարարության առաջին հերթը ավարտելուց հետո նոր ջրովի դարձած հողամասերում կոլտնտեսությունն սկսեց մշակել 10 հեկտար ծխախոտ։ Ոմանք ըսկըսեցին տարակուսել, թե նոր հողամասում արդյո՞ք ծխախոտ կաճի։ Սակայն կոլտնտեսականների քրտնաջան աշխատանքի շնորհիվ ծխախոտի հիանալի պլանտացիա գցվեց ու մշակվեց։ Աշնանը ծխախոտի յուրաքանչյուր հեկտարից 22 ցենտներ բերք ստացվեց, պետական մթերակայան հանձնվեց 220 ցենտներ բարձրորակ հումք, որի դիմաց կոլտնտեսությունը պետությունից ստացավ 30 հազար ռուբլի։

Առաջին հաջողությունները ոգևորել են մարդկանց։ Եվ այժմ մեծ եռանդով կոլտնտեսականները կառուցում են երկրորդ, ավելի մեծ ջրամբարը, որը հնարավորու-





թյուն կտա ոռոգելի դարձնել նոր խոշոր հողամասեր և ավելացնել ծխախոտի պլանտացիաները։

Ագիտատոր Ա. Բաղդասարյանի օրինակը Տեղ գյուղում եզակի չէ։ Կոլտնտեսականների սերն ու հարգանքըն են վայելում նաև ագիտատորներ Ա. Ղազարյանը, Լ. Ավագյանը, Մ. Աղաբեկյանը, Հ. Դալլաքյանը, Ա. Սարգըսյանը և շատ ուրիշներ։ Նրանք կոլտնտեսականներին պարզաբանում են մեր պարտիայի և կառավարության որոշումները, միջազգային կյանքի կարևորագույն հարցերը, ծանոթացնում գիտության նվաճումներին և առաջավոր փորձին, բարձրացնում նրանց աշխատանքային խանդավառությունը, օգնում ետ մնացողներին, պաշտպանում, խրախուսում և տարածում լավ նախաձեռնությունը, աշխատանքի առաջավոր մեթոդները և դրանով իսկ ապահովում տնտեսության առջև կանգնած խնդիրների կատարումը։

Անցյալ գարնանը, ինչպես հայտնի է, բնակլիմայական անբարենպաստ պայմաններ էին ստեղծված բույսերի աճման համար։ Վտանգի տակ էր գտնվում կերի կուտակման պլանի կատարումը։ Ագիտկոլեկտիվի նախագահ Ա. Սարգսյանը պարտբյուրոյի հանձնարարությամբ հրավիրեց ագիտատորների հավաք։ Նրանք մըշակեցին իրենց անելիքները կոլտնտեսության վարչությանը օգնություն ցույց տալու գործում։ Նախ մասսայականացրին կոլտնտեսության վարչության որոշումը կերի կուտակման համար լրացուցիչ վարձատրություն տալու մասին, ապա օգնեցին կոլտնտեսականներին սոցմրցությամբ ստանձնելու նոր պարտավորություն՝ ավելի շատ խոտ հնձելու և ավելի շատ հյութալի կեր կուտակելու վերաբերյալ։ Այնուհետև ագիտատորների անմիջական մասնակցությամբ դաշտավարական բրիգադները հանքային պարարտանյութերով սնուցեցին իրենց խոտհարքները, գիզզագեցին, մաքրեցին քարերը, որոշ ժամանակ արգելեցին անասունների մուտքը մարգագետին, խնամքով հնձեցին ու կուտակեցին խոտը, պատրաստեցին անհրաժեշտ քանակությամբ սիլոս։ Ագիտատորների աշխատանքը հիանալի արդյունք տվեց։ Կոլտնտեսությունը 2.800-ի դիմաց կուտակեց 3.000 տոննա խոտ, կատարվեց նաև սիլոսի կուտակման պլանը։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքների կազմակերպման գործում որոշակի հաջողություններ ունեն նաև Խնածախ գյուղի ագիտատորները։

Այստեղ ագիտատորները, հատկապես վերջին շրջանում, ավելի են ակտիվացրել իրենց գործունեությունը, կոլտնտեսության ձեռք բերած ամենափոքրիկ հաջողության մեջ էլ զգացվում է ագիտատորների աշխատանքի արդյունքը։

Այդպիսի լավագույն ագիտատորներից է Գ. Ասատրյանը, որը 15 տարվա ագիտացիոն աշխատանքի փորձ ունի։ Նա իր ագիտացիոն զրույցներն ավելի հետաքրքիր դարձրեց, երբ ծանոթացավ ագիտատորի պարտքի մասին «Ագիտատորի բլոկնոտ»-ում տպագրված Լենինգրադի բալթիական նավաշինական գործարանի հնագույն բանվոր, ագիտատոր Ն. Սորոկինի խորիմաստ հոդվածի հետ։

1963 թվականը բավականին ցածր ցուցանիշներով էր փակել Խնածախի կոլտնտեսությունը։ Ինչն էր պատճառը։ Այդ հարցը մտահոգում էր ինչպես ագիտատոր Գ. Ասատրյանին, այնպես էլ շատ շատերի։

Եվ ահա, հանգամանորեն ուսումնասիրելով կոլտնտեսությունում տիրող վիճակը, ագիտատորը որոշեց իր հերթական զրույցներից մեկը նվիրել այդ հարցին։ Զրույցի ընթացքում նա ունկնդիրներին պարզաբանեց բերքատվության և մթերատվության բարձրացման ներքին ռեզերվները։

Ագիտատոր Գ. Ասատրյանը, սակայն, իր գործը զրույցներով ավարտված չհամարեց։ Ընդհակառակը, նա սկսեց միշտ հանդիպել իր ունկնդիրների հետ հենց աշխատանքի ժամանակ, պրակտիկ խորհուրդներով օգնել ունկնդիրներին, որպեսզի նրանք ստանձնած պարտավորությունները կատարեն բարձր ցուցանիշներով։ Դրանից հետո գործերն սկսեցին ընթանալ հաջող։ Ցանքը կատարվեց բարձրորակ սերմացուներով և լավ պարարտացված դաշտերում։ Կոլտնտեսականները պայքարում էին բարձր բերքի համար և նրանք հասան իրենց նպատակին՝ հաջողությամբ ավարտվեցին բերքահավաքն ու դաշտային աշխատանքները։

Աշխատավորության շրջանում տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքների բնագավառում աչքի ընկնող հաջողությունների են հասել նաև Կորնիձորի, Խոզնավարի և շրջանի շատ ագիտատորներ։

ՔՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

ՀԿԴ Գորիսի շրջկոմի առաջին քարտուղար



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԾԱՂԿՈՒՄԸ ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ

Ամբողջ աշխարհին հայտնի է, թե մեր հայրենիքը պատմական կարճ ժամանակամիջոցում ինչպիսի բարձրության է հասել գիտության և կուլտուրայի զարգացման բնագավառում։ Երկրագնդի ոչ մի երկրում գիտության, ժողովրդական կրթության, գրականության և արվեստի գործիչները, մամուլի և հրատարակչությունների աշխատողներն այնպիսի հոգատարությամբ ու հարգանքով չեն շրջապատված, այնպիսի ակտիվ մասնակցություն չեն ունենում հասարակական կյանքին, ինչպես սոցիալիզմի հայրենիքում։

Մեր լայնածավալ երկիրը ծածկված է բազմաթիվ գիտական հիմնարկների խիտ ցանցով։ Միայն նախագծային ինստիտուտներում աշխատում է 450 հազար մարդ։ Սակայն ժողովրդական տնտեսության զարգացման թափն այնքան մեծ է և արագ, որ նախագծողների այդ հսկա բանակն անգամ չի բավարարում նրա պահանջները։

ՍՍՌՄ-ն աշխարհի ամենակրթված, ամենաբարձր կուլտուրայի տեր երկիրն է։ Եթե ամբողջ աշխարհում մեկ մարդու համար միջին հաշվով 2 գիրք է հրատարակվում, ապա մեզ մոտ՝ 5,7 գիրք։ Թե ինչքան շատ գրականություն է հրատարակվում մեր երկրում, բավական է բերել մի օրինակ. համաշխարհային գրքի արտադրության 1/4-ը տալիս է ՍՍՌՄ-ը, որտեղ յուրաքանչյուր րոպեում լույս է տեսնում 24 հազար, յուրաքանչյուր ժամում՝ 144.000 գիրք։ Ըստ որում ոչ մի տեղ գիրքն այնքան էժան չէ, որքան մեր հայրենիքում։ Ինչպես ՍՍՌՄ Գերագույն սովետի սեսիայում իր ելույթում ասաց ակադեմիկոս Վ. Համբարձումյանը, մեզ մոտ յուրաքանչյուր ինժեներ, տեխնիկ, յուրաքանչյուր աշխատավոր լայն հնարավորություններ ունի սեփական, այդ թվում գիտա-տեխնիկական գրադարան ստեղծելու համար։

Պարտիան հատուկ ուշադրություն է դարձնում աճող սերնդի կրթությանն ու դաստիարակությանը։ Այժմ մեր երկրում գործում են ավելի քան 220 հազար դպրոց, մոտ 750 բուհ, 8 հազար միջնակարգ մասնագիտական

և պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնական հաստատություններ։ Մեր հայրենիքի ժողովուրդների 64 լեզուներով սովորում են ավելի քան 65 միլիոն մարդ։

ՍՍՌՄ-ում բոլոր հնարավորություններն ստեղծված են գիտությանը տիրապետելու համար։ Մեզ մոտ ոչ միայն ուսուցումն է ձրի, այլև միջնակարգ մասնագիտական և բարձրագույն ուսումնական հաստատությունների 5,5 միլիոն ուսանող թոշակ են ստանում և ապահովված են հանրակացարաններով։ Տարեցտարի ավելանում է ուսումնական հաստատությունների շրջանավարտների թիվը, միայն անցած տարի երկրի բուհերն ավարտեցին 350 հազար և միջնակարգ մասնագիտական ուսումնարանները՝ 550 հազար մարդ։ Ներկայումս մեր երկրի ձեռնարկություններում և հիմնարկներում աշխատում են 2 անգամ ավելի շատ ինժեներներ, քան ԱՄՆ-ում։ Ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում աշխատողների 64 տոկոսը ունի բարձրագույն և միջնակարգ կրթություն։

Աճող սերնդի նկատմամբ պարտիայի և կառավարության հոգատարության արտահայտություններից մեկն էլ գիշերօթիկ և երկարօրյա դպրոցների, մանկամսուրների, մանկապարտեզների ցանցի ընդլայնումն է, որոնցում համապատասխանաբար ընդգրկված են մոտ 2,5 միլիոն և 10 միլիոն երեխա։

Ժողովրդական կրթության զարգացման գործում մեծ հաջողություններ ունի նաև մեր ռեսպուբլիկան, որտեղ մոտ կես միլիոն երեխաներ սովորում են դպրոցներում, 52 հազար մարդ՝ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում, 10 հազար մարդ՝ պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում։ Այլ կերպ ասած, մեզ մոտ սովորում է յուրաքանչյուր չորրորդ մարդը։

ՍՍՌՄ գիտության և կուլտուրայի զարգացման ուղղությամբ նոր քայլեր են կատարվելու այս տարի։ Մեծ չափերով ավելանալու են ժողովրդական կրթության, գիտության, կուլտուրայի, առողջապահության, ֆիզկուլտուրայի, սպորտի և այլ նպատակներով կատարվող ծախսերը, որոնց գումարը կազմում է 37,4 միլիարդ ռուբլի։ Այդ 4,3 միլիարդ ռուբլով ավելի է, քան 1964 թվականին։ Ընթացիկ տարում 7,7 միլիոն երեխաներ կգտնվեն մանկամսուրներում և մանկապարտեզներում։ Սակայն մանկական հիմնարկները մեզ մոտ դեռևս չեն



բավարարում բնակչության աճող պահանջները։ Այդ պատճառով էլ պարտիան և կառավարությունը նոր հսկայական միջոցներ են հատկացնում դրանց ընդլայնման նպատակին։ Այս տարի մանկամսուրներում և մանկապարտեզներում կավելանա 500.000 նոր տեղ՝ անցյալ տարվա 440.000-ի դիմաց։ Այդքան մեծ քանակությամբ տեղեր մանկական հիմնարկներում երբեք չեն ավելացվել, դա արվում է առաջին անգամ։

Նախատեսված է իրագործել դպրոցական լայն շինարարություն, որը հնարավորություն կտա զգալի չափով ավելացնելու տարրական և միջնակարգ դպրոցներում սովորողների թիվը։ Այս տարի բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորողների թիվը կկազմի 7,3 միլիոն մարդ։

Պարտիան և կառավարությունը մեծ ուշադրություն են նվիրում գիտության համակողմանի զարգացմանը, խրախուսում են և այսուհետև նույնպես կխրախուսեն գիտնականների ստեղծագործական նախաձեռնություններն ու որոնումները։

Այս տարի նկատելիորեն աճելու են գիտության ծախսերը՝ անցյալ տարվա համեմատությամբ 8,7 տոկոսով։ Դա լիովին ապահովում է գիտահետազոտական հիմնարկների աշխատանքի պայմանների բարելավումը և գիտական հետազոտությունների լայն ծրագրի իրագործումը։ Իսկ գիտության զարգացումը, ինչպես հայտնի է, երկրի տնտեսական առաջադիմության վճռական գործոններից մեկն է։ ՍՍՌՄ Գերագույն սովետի սեսիային տված զեկուցման մեջ ընկ. Ա. Ն. Կոսիգինը նշեց, որ հեռանկարային հետազոտություններում գիտական ուժերը պետք է կենտրոնացված լինեն այն պրոբլեմների լուծման վրա, որոնք տեխնիկական մեծ առաջադիմության կհասցնեն ժողովրդական տնտեսության կարևորագույն ճյուղերը։ Անվիճելի է սովետական գիտնականների մեծ ավանդը գիտության և տեխնիկայի առաջատար ճյուղերի զարգացման գործում։ Նրանց նվաճումները հիացմունք են առաջ բերում ոչ միայն մեր հայրենիքում, այլև ամբողջ աշխարհում։

Մեր երկրում մեծ ուշադրություն է նվիրվում ժողովրդական առողջապահությանն էլ ավելի բարելավելու վրա։ Այս տարի նորից կընդարձակվի բուժհիմնարկնե-

րի ցանցը, կավելանա հիվանդանոցների տեղերի թիվը։ Արդեն լրացուցիչ միջոցներ են հատկացված բուժհիմնարկները նորագույն սարքավորումներով կահավորելու համար։ Առողջապահության ծախսերը անցյալ տարվա համեմատությամբ ավելացվում են 980 միլիոն ռուբլով կամ 17,9 տոկոսով։

Ընթացիկ տարվա հունվարի մեկից իջեցվել են դեղորայքի առանձին տեսակների մանրածախ գները, որի համար նախատեսված է 40 միլիոն ռուբլի։ Բացի դրանից 20 տոկոսով ավելացել են հիվանդանոցներում և հաշմանդամների ու զառամյալների տներում բուժվող հիվանդներին ձրի բացթողնվող դեղորայքի համար միջոցները։ Նախատեսված է նաև ամբուլատոր բուժման դեպքում որոշ կարգի հիվանդներին բաց թողնել ձրի դեղորայք։

Գաղտնիք չէ, որ վերջին տարիներին որոշ չափով թերագնահատվում էր կուլտուր-լուսավորական հիմնարկների շինարարությունը։ Այդ սխալն ուղղված է։ Առաջիկայում կավելանա կուլտուրայի տների, ակումբների, գրադարանների, կինոսարքավորումների և թատրոնների քանակը։ Ավելի շատ կուլտուրական միջոցառումներ կանցկացվեն երկրում։

Կուլտուր-լուսավորական, ինչպես նաև արվեստի հիմնարկների, հրատարակչությունների և այլ կազմակերպությունների աշխատանքի բարելավմանը կնպաստի նաև այդ բնագավառների աշխատողների աշխատավարձի զգալի բարձրացումը, որը կկատարվի 1965 թվականի ապրիլին (4-րդ եռամսյակի փոխարեն)։ Միջին հաշվով կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատողների աշխատավարձը կաճի 32 տոկոսով. աճն ավելի մեծ կլինի գյուղական վայրերում։ Օրինակ, գյուղական գրադարանավարի համար այն կկազմի մինչև 40 տոկոս, իսկ ակումբի վարիչի համար՝ մինչև 60 տոկոս։ Այդ նպատակով հսկայական միջոցներ են հատկացվում պետական բյուջեից։ Թե որքան մեծ կլինի այդ թիվը, կարելի է պատկերացնել, եթե նկատի ունենանք, որ կուլտուր-լուսավորական հիմնարկներում աշխատում են մոտ 500.000 մարդ։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1965 թվականի պլանով նախատեսվում է սովետական բոլոր ռեսպուբլիկաների, այդ թվում և Հայկական ՍՍՌ-ի, էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի հետագա աճ, որը լենինյան իմաստուն ազգային քաղա-



քականության փայլուն դրսևորումներից մեկն է։

Ռեսպուբլիկայի 1965 թվականի պետական բյուջեի ծախսերը 1964 թվականի համեմատությամբ աճում են 12,7 տոկոսով։ Այս տարի զգալիորեն կաճեն սպառման հասարակական ֆոնդերը ժողովրդական կրթության, գիտության, կուլտուրայի, առողջապահության, ֆիզկուլտուրայի և սպորտի, սոցիալական ապահովության և ապահովագրության, նպաստների, կենսաթոշակների համար և այլն։ Այդ նպատակով նախատեսվում է 336 միլիոն ռուբլի, որը 16 տոկոսով ավելի է, քան անցյալ տարի։

Հանրակրթական դպրոցներում սովորողների թիվը կավելանա մոտ 40 հազարով և կկազմի կես միլիոն, որոնց ուսուցումն ապահովելու նպատակին հատկացված է 89,7 միլիոն ռուբլի՝ 24 տոկոսով ավելի, քան 1964 թվականին։ Բացի դրանից 8,8 միլիոն ռուբլի հատկացված է գիշերօթիկ և երկարօրյա դպրոցների պահպանմանը, որոնց կոնտինգենտը ընթացիկ տարում բավականաչափ կմեծանա։ Փոքր չէ բաներիտ և գյուղերիտ դպրոցներում ընդգրկվածների թիվը՝ 33.300 մարդ, որոնց ուսման ծախսերը կազմելու են 3,1 միլիոն ռուբլի։

Մանկական և նախադպրոցական հիմնարկներում անցյալ տարվա 53,8 հազարի փոխարեն կընդգրկվեն ավելի քան 62 հազար երեխա, որոնց պահպանման և դաստիարակության համար նախատեսված է 20,3 միլիոն ռուբլի։ Դա 39,1 տոկոսով ավելի է անցյալ տարվա հատկացումներից։

Ռեսպուբլիկայում այս տարի կկառուցվեն նոր դպրոցներ 20 հազար աշակերտի համար և մանկական նախադպրոցական հիմնարկներ՝ 6.100 երեխայի համար։

Տարեցտարի ավելանում է ռեսպուբլիկայի բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորողների թիվը, որը այս տարի կհասնի 65,5 հազար մարդու։

Հայկական ՍՍՌ-ում ստեղծված է գիտական հիմնարկների լայն ցանց։ Գործում են 58 գիտահետազոտական հիմնարկներ, որոնցից շատերը իրենց հայտնագործություններով և նվաճումներով արժանացել են ոչ միայն միութենական, այլև համաշխարհային ճանաչման։ Պլանով նախատեսված է այս տարի գիտահետազոտական աշխատանքների լայն ծավալում և այդ նպատակի համար հատկացված է 20,8 միլիոն ռուբլի։

Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգաց-

ման պլանով նախատեսված է գիտահետազոտական աշխատանքների և արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորման 538 առաջադրանք, անցած տարվա 414-ի փոխարեն։ Հատկապես մեծ ուշադրություն է նվիրված հաշվողական տեխնիկայի արտադրության և արմատավորման գործին։

Ընթացիկ տարում կավելանա ռեսպուբլիկայի գրադարանների, ակումբների, կինոսարքավորումների թիվը, մեծ ծավալ կստանա գրքերի և պարբերականների հրատարակումը։ Շահագործման կհանձնվի 14 հիվանդանոց՝ 1.400 մահճակալով։

Հայկական ՍՍՌ պետական բյուջեից հսկայական հատկացումներ են արված արվեստի, ռադիոյի, հեռուստատեսության, ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացմանը։ Ընթացիկ տարում մեր հեռուստադիտողները հնարավորություն կունենան հաղորդումներ ընդունելու Մոսկվայից, Լենինգրադից, Թբիլիսիից, Բաքվից, ինչպես նաև եվրոպական շատ պետություններից։ Կիրառվեն հեռուստատեսային հաղորդումները երկրորդ ծրագրով։ Կավարտվի Սունդուկյանի անվան ակադեմիական թատրոնի շենքի կառուցումը, Երևանում և մյուս քաղաքներում վեր կբարձրանան 9—10 հարկանի բազմաթիվ բնակելի, վարչական և այլ կարգի շենքեր...

Բերված թվերը ոչ միայն հպարտության, այլև բարձր պատասխանատվության զգացում են առաջ բերում մեր մեջ։ Յուրաքանչյուր աշխատավոր պարզ գիտակցում է, որ այդ վիթխարի պլանների հաջող կատարումը կախված է իր լավ աշխատանքից։

Ուրեմն մեզանից ամեն մեկը թող իր ավանդը մըտցընի պարտիայի և կառավարության հոյակապ կանխագծումները իրականություն դարձնելու գործում։

Ս. ՄՈՎՍԻՍՅԱՆ



# ՆՈՐ ՏԱՐՎԱ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՆՎԵՐՆԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԻՆ

(Թվեր և փաստեր)

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները նոր տարին նշանավորում են աշխատանքային նոր հաջողություններով։ Դա նրանց լավագույն նվերն է սովետական հայրենիքին։ Կատարելով իրենց ստանձնած պարտավորությունները՝ նրանք ձգտում են հաղթանակով դուրս գալ սոցիալիստական մրցությունից։ Ահա տեղեկություններ այդ մասին.

★ Երևանի Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը արդեն երկրին տվեց նոր տարվա իր առաջին նվերները։ Գործարանի 1—11ա և 1—11բ արտադրամասերը հունվարի առաջին հնգօրյակում պլանից ավելի թողարկեցին տասնյակ խորանարդ մետր լատեքս։

★ Այս տարվա աշխատանքային առաջին օրվա արտադրական պլանը Երևանի ալյումինի գործարանի կոլեկտիվը կատարեց 100,2 տոկոսով, գերակատարվեցին նաև հետագա օրերի պլանները։ Ալյումինագործները պլանից դուրս երկրին մեծ քանակությամբ արտադրանք են տալիս։

★ Անցյալ տարվա արտադրական պլանները ժամկետից 15 օր շուտ կատարելուց հետո Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի կոմունիստական աշխատանքի № 12 արտադրամասի կոլեկտիվը գերազանց ցուցանիշներով կատարեց նաև այս տարվա առաջին շաբաթվա պլանները։

★ Նոր տարվա առաջին երեք աշխատանքային օրում Երևանի ժամացույցի գործարանի կոլեկտիվը առաքման պատրաստեց տարբեր տեսակի 10 հազար զարթեցուցիչներ և հունվարի 6-ին ուղարկեց Շվեդիա։

★ Այս տարվա աշխատանքային առաջին տասնօրյակը նշանակալից հաջողություններով փակեց Երևանի «Կրասնի շվեյնիկ» կարի ֆաբրիկայի կոլեկտիվը։ Տասնօրյակում արտադրանքի թողարկումը գերակատարված է 5 տոկոսով։

★ Հենց նոր տարվա առաջին օրերից տեխնիկական առաջադիմության ուղիով է ընթանում Լենինականի մսի պահածոների կոմբինատի կոլեկտիվը։ Հունվարի սկզբներին կոմբինատում մոնտաժվեցին երկու խոշոր հոսքային գծեր։ Դա հնարավորություն կտա մեծ չափերով ավելացնել արտադրանքի թողարկումը։ Միայն այս տարի արտադրվելու է մոտ չորս միլիոն տուփ մսից պատրաստված պահածո։

★ Լենինականի սարքաշինական գործարանի կոլեկտիվը, անցյալ տարվա պլանը կատարելով ժամկետից 18 օր շուտ և պլանից ավելի թողարկելով 72 հազար ռուբլու արտադրանք, այժմ գերակատարում է նոր տարվա առաջադրանքները։ Գործարանում այս տարի տեղադրվելու են 35 նոր մեքենաներ ու սարքավորումներ։

★ Տնտեսական տարվա աշխատանքային առաջին օրվանից բարձր արտադրողականությամբ է աշխատում Լենինականի միկրոէլեկտրաշարժիչների գործարանի կոլեկտիվը։ Հունվարի առաջին օրերից սկսած տեղամասը (հատկապես մեխանիկական և ստատորների) 5—7 տոկոսով գերակատարում են պլանները։

★ Նոր տարվա առաջին տասնօրյակի պլանները պատվով կատարեցին Երևանի կարի № 4 ֆաբրիկայի աշխատողները։ Նրանք 10 օրում թողարկեցին 20 հազար կտոր հագուստեղեն։ Ընթացիկ տարում ֆաբրիկան արտադրելու է 60 նոր տեսակի հագուստեղեն։

★ «Միայն բարձր որակի արտադրանք»։ Նոր տարում այս նշանաբանով է սկսել աշխատել Կիրովականի Կամոյի անվան տրիկոտաժի ֆաբրիկայի կոլեկտիվը։ Առաջին տասնօրյակում շատ ագրեգատներ 51-ի փոխարեն 92 տոկոսով առաջին տեսակի արտադրանք են տալիս։

★ «Երարդշին» տրեստի № 2 շինվարչության աշխատողները նոր տարվա աշխատանքային մի քանի օրվա ընթացքում ավարտեցին Երևանի էլեկտրալամպերի գործարանի արտադրական նոր կոմպլեքսի շինմոնտաժային հիմնական աշխատանքները։

★ Երևանի ցինկապատ իրերի գործարանի կոլեկտիվը արդեն յուրացրել է ամանեղենի երկու նոր տեսակների արտադրության տեխնոլոգիան, գործարկվել են զաճելու երկու նոր ապարատներ։ Այս տարի գործարանը երկրին կտա մեկ միլիոն ռուբլու ալյումինե և ցինկապատ ամանեղեն։

★ Աշխատանքային հիանալի պարտավորություն է ստանձնել Երևանի ռետինա-տեխնիկական իրերի գործարանի կոլեկտիվը։ Նա խոստացել է հունվար ամսվա պլանը կատարել ժամկետից 5 օր շուտ։

★ Երևանի բեռնատար ավտոմեքենաների նորոգման գործարանում մշակվել է մեքենայի կարևոր մասերից մեկի պատրաստման նոր եղանակ։ Դրա շնորհիվ 15 անգամ արագացվում է տվյալ մասի արտադրության պրոցեսը՝ երեքի փոխարեն նրանով զբաղվում է մեկ մարդ և միաժամանակ բարձրանում արտադրանքի որակը։

★ Հունվարի մեկ շաբաթում Երևանի գուլպայի ֆաբրիկայի կոլեկտիվը արտադրել է 60 հազար զույգ գուլպա։ Կոլեկտիվը պարտավորվել է աշխատանքային յուրաքանչյուր օրում թողարկել 9 հազար զույգ գուլպա։



★ Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխատավորները նույնպես աշխատանքային նվերներով են նշանավորում 1965 թվականը։ Ախուրյանի շրջանի Քեթի գյուղի կոլտնտեսությունն արդեն պատրաստ է գարնանացանին։ Վարի ու ցանքի համար վերանորոգված են գյուղատնտեսական մեքենաներն ու գործիքները, զտված է սերմացուն, պարարտացված են դաշտերը։

★ Ղափանի Լեռնաձորի կաթնանասնապահական սովխոզը գերակատարել է այս տարվա առաջին եռամսյակի մսի հանձնման պլանը։ Պետությանն է հանձնվել 270 ցենտներ միս։ Հանձնված անասունների մեծ մասը աչքի է ընկել բարձր գիրությամբ։

★ Բասարգեչարի Զոդ գյուղի կոլտնտեսականները անցյալ տարի ստանալով հացահատիկի և ծխախոտի բարձր բերք, այս տարի ամեն ինչ անում են, որպեսզի լավ նախապատրաստված դիմավորեն գարնանացանին։ Կոլտնտեսությունն ունի լավորակ սերմացու, պարարտանյութ. շուտով կավարտվի տրակտորների և գյուղատնտեսական մյուս մեքենաների ու գործիքների վերանորոգումը։

★ Գուգարքի շրջանի Վահագնի սովխոզը հունվարի առաջին տասնօրյակում պետությանը հանձնեց 14 տոննա միս։ Հանձնված անասուններն ունեին միջակ և միջակից բարձր գիրություն։ Սովխոզում բտվում են 66 գլուխ խոշոր եղջերավոր անասուն և 250 գլուխ խոզ։

★ Նոյեմբերյանի շրջանի Նոյեմբերյան ավանի և Կողբի սովխոզները, Ղալաչայի կոլտնտեսությունը հունվարի 4—6-ը մթերակայան են հանձնել 610 ցենտներ միս։ Անասնապահները ձգտում են ժամկետից շուտ կատարել մսի հանձնման պլանը։

★ Գյուղատնտեսական նոր տարում բարձր բերք ստանալու համար ջանք չեն խնայում Ախուրյանի շրջանի Ազատանի կոլտնտեսականները։ Նրանք հունվարի առաջին 5 օրվա ընթացքում դաշտ են տեղափոխել 8 հազար տոննա գոմաղբ, պահեստավորել են 380 տոննա քիմիական պարարտանյութ։

Ռեսպուբլիկայի աշխատավորները շարունակում են ավելի եռանդագին աշխատել և երկրին տալ ավելի շատ արդյունաբերական արտադրանք և ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ։

## ԴԻՏՈՂԱԿԱՆ ՆՅՈՒԹԵՐ ՍՄԿԿ ԾՐԱԳՐԻ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

### ԷԼԵԿՏՐԱԷՆԵՐԳԻԱՅԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՍՍՌՄ-ում
/ՄԻԼԻԱՐԴ ԿԻԼՈՎԱՏ-ԺԱՄԵՐՈՎ/




1963 թ. 1964 թ. 1965 թ.

### ՊՈՂՊԱՏԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՍՍՌՄ-ում
/ՄԻԼԻՈՆ ՏՈՆՆԱՅՈՎ/




1963 թ. 1964 թ. 1965 թ.



### ՆԱՎԹԻ ԱՐԴՅՈՒՆԱՀԱՆՈՒԹՅՈՒՆԸ
/ՄԻԼԻՈՆ ՏՈՆՆԱՅՈՎ/




### ԲՆԱԿԱՐԱՆԱՅԻՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ
/ՄԻԼԻՈՆ ՔԱՌԱԿՈՒՍԻ ՄԵՏՐԵՐՈՎ/







1964 թ. 1965 թ.

# ԼԱՏԻՆԱԿԱՆ ԱՄԵՐԻԿԱՆ ՄԱՐՏՆՉՈՒՄ Է

Ավելի ու ավելի լայն ծավալ է ստանում լատինաամերիկյան երկրների ժողովուրդների պայքարը ազատության և ազգային անկախության համար։ Այն իր սուր ծայրով ուղղված է այդ երկրների տնտեսական ու քաղաքական կյանքում ԱՄՆ-ի իմպերիալիստական տիրապետության դեմ։

Լատինական Ամերիկայի ժողովուրդները չեն ցանկանում հաշտվել այն բանի հետ, որ իրենց բնական հարստությունները զավթել է Հյուսիսային Ամերիկայի կապիտալը։ ԱՄՆ-ի մոնոպոլիաների ձեռքումն են գտնվում Չիլիում արդյունահանվող պղնձի 90 տոկոսը, Բոլիվիայում անագի արդյունահանումը, Բրազիլիայում արդյունահանվող ածխի 70 տոկոսը, մայրցամաքի հետախուզված ամբողջ նավթի պաշարի երեք քառորդը և Լատինական Ամերիկայի ընդերքի շատ այլ հարստություններ։

Լատինական Ամերիկայում ԱՄՆ-ի կապիտալ ներդրումների ընդհանուր գումարը գերազանցում է 14 միլիարդ դոլարից։ Դրա շնորհիվ մոնոպոլիաներն ստանում են հսկայական շահույթներ՝ ըստ որոշ տվյալների, յուրաքանչյուր ներդրված դոլարի դիմաց միջին հաշվով 3 դոլար 17 ցենտ։ 1946—1961 թվականներին ԱՄՆ-ը լատինաամերիկյան երկրներում ներդրել են 5.467 միլիոն դոլար, բայց դուրս տարել 12.166 միլիոն։

Կապիտալ ներդրումներն ուղղելով լատինաամերիկյան երկրների էկոնոմիկայի՝ իրենց համար ձեռնտու ճյուղերի զարգացման նպատակին, ԱՄՆ-ի մոնոպոլիաներն այդ էկոնոմիկային տվել են այլանդակ, միակողմանի բնույթ։ Այսպես, Բրազիլիայում սուրճը և կակաոն տալիս են ամբողջ ազգային եկամտի 64 տոկոսը, Բոլիվիայում անագը և կապարը՝ 71 տոկոսը, Վենեսուելայում նավթը՝ 92 տոկոսը, Կոլումբիայում նավթը և սուրճը՝ 92 տոկոսը, Կոստա-Ռիկայում սուրճը և բանանը՝ 86 տոկոսը, Չիլիում պղինձը և սելիտրան՝ 76 տոկոսը և այլն։ Միակողմանի տնտեսական զարգացումն այդ երկրները մեծ կախման մեջ է դնում ԱՄՆ-ից։ Բնորոշ է, որ այդ վիճակն արդարացնելու համար ամերիկյան գաղափարախոսները՝ մոնոպոլիաների ծառաները, հատուկ ստեղծել են այսպես կոչված «աշխարհագրական ֆա-



տալիզմի» տեսություն, ըստ որի Լատինական Ամերիկայի երկրների տնտեսությունը պետք է ընդմիշտ հանդիսանա ԱՄՆ-ի էկոնոմիկայի կցորդը։

Լատինական Ամերիկայի երկրներում ամերիկյան իմպերիալիզմի գիշատիչ քաղաքականությունը պաշտպանում է տեղական լատիֆունդիաների վերնախավը, որը սերտորեն կապված է ԱՄՆ-ի մոնոպոլիաների հետ։ Խոշոր լատիֆունդիստ-կալվածատերերը կազմում են մայրցամաքի բնակչության միայն երկու տոկոսը, սակայն նրանց է պատկանում բոլոր վարելահողերի երեք քառորդը։

Լատինական Ամերիկայի երկրների ժողովրդական լայն զանգվածների ծանր վիճակի հիմնական պատճառը իմպերիալիստական մոնոպոլիաների կողմից ազգային հարստությունների կողոպտումն ու լատիֆունդիստական օլիգարխիայի տիրապետությունն են։ Անընդհատ իջնում է աշխատավորների կենսամակարդակը։ Այսպես, Արգենտինայում, Բոլիվիայում և Պարագվայում ապրուստի արժեքն ամեն ամիս բարձրանում է 2—3, իսկ Բրազիլիայում՝ 4—5 տոկոսով. Չիլիում այն 1959 թվականից մինչև այժմ բարձրացել է չորս անգամ։

Լատինաամերիկյան երկրներում 5—18 տարեկան երեխաների ու դեռահասների միայն կեսն է դպրոց հաճախում, իսկ միջնակարգ կրթություն է ստանում ուսումն սկսող քսան երեխաներից միայն մեկը։ Կյանքի միջին տևողությունը տատանվում է 33-ից (Հայիթի) մինչև 39 (Բրազիլիա) տարին։ Լատինական Ամերիկայում, ասված է Հավանայի երկրորդ դեկլարացիայում, «սովից, հիվանդություններից, որոնք հնարավոր է բուժել, կամ անժամանակ ծերությունից ամեն րոպե մահանում են չորս, ամեն օր՝ 5.500, տարեկան երկու միլիոն, յուրաքանչյուր հինգ տարում՝ 10 միլիոն մարդ։ Այս մահացությունները կարելի է հեշտությամբ կանխել, սակայն դրանք շարունակվում են։ Լատինական Ամերիկայի բնակչության երկու երրորդը շատ կարճ կյանք է ունենում և ապրում է մահվան մշտական սպառնալիքի տակ։ Տասնհինգ տարում այդտեղ երկու անգամ շատ մարդ է մահացել, քան ամբողջ առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակ, և այդ վիճակը շարունակվում է։ Միևնույն ժամանակ Լատինական Ամերիկայից դեպի Միացյալ Նահանգներ անընդհատ փող է հոսում՝ րոպեում գրեթե չորս հազար, օրական հինգ միլիոն, տարեկան եր-

կու միլիարդ, յուրաքանչյուր հինգ տարում՝ 10 միլիարդ դոլար»։

Սակայն իմպերիալիստների անբաժան տիրապետության, բացահայտ կողոպուտի և կույր թելադրանքի ժամանակներն անցյալի գիրկն են անցնում։ Սոցիալիզմի երկրների հաջողությունները, Կուբայի ռևոլյուցիայի հաղթանակը ամենատարբեր ձևերով նպաստում են Լատինական Ամերիկայի ժողովուրդների հակաիմպերիալիստական պայքարի վերելքին՝ սկսած մասսայական գործադուլային շարժումից և վերջացրած պարտիզանական պատերազմով։

Վերջին տարիներս լայն թափ է ստացել գործադուլային շարժումն ընդդեմ ապրուստի թանկության, աղքատության, հանուն սոցիալ-տնտեսական վերափոխումների իրականացման։ 1950—1952 թվականներին լատինաամերիկյան երկրներում միջին հաշվով գործադուլ է արել 3,4 միլիոն, 1960 թվականին՝ 20 միլիոն, 1962 թվականին՝ արդեն 21 միլիոն մարդ։ Գործադուլավորների թիվը 1963 թվականին կազմեց 15 միլիոն։ Գործադուլը դարձել է պրոլետարիատի դասակարգային պայքարի հիմնական ձևերից մեկը։

Գործադուլային շարժման աճը կապված է հակաիմպերիալիստական պայքարի ընդհանուր վերելքի, Լատինական Ամերիկայի բանվոր դասակարգի թվական կազմի մեծացման ու կազմակերպվածության ամրապնդման հետ։ Լատինաամերիկյան երկրների միայն արդյունահանող ու վերամշակող արդյունաբերության մեջ և տրանսպորտում ներկայումս, 1940 թվականի 6,4 միլիոնի դիմաց, աշխատում է 20 միլիոն մարդ։ Այժմ արհմիութենական կենտրոններ կան Արգենտինայում, Բրազիլիայում, Բոլիվիայում, Վենեսուելայում, Ուրուգվայում, Չիլիում, Պերուում։ Բանվորական շարժման միասնությունն ավելի ու ավելի է ամրապնդվում մայրցամաքի մասշտաբով։ Այդ ուղղությամբ լուրջ քայլ հանդիսացավ արհմիութենական միասնության՝ 1964 թվականի հունվարի վերջին Բրազիլիա քաղաքում հրավիրված կոնգրեսը, որին մասնակցեցին լատինաամերիկյան 18 երկրների 25 միլիոն աշխատավորներին ներկայացնող 387 պատգամավորներ։ Կոնգրեսում ստեղծվեց արհմիութենական միասնության կոորդինացիոն կոմիտե, բանաձև ընդունվեց ի պաշտպանություն բանվորների սոցիալական ու տնտեսական իրավունքների ընդդեմ իմպե-



րիալիստական մոնոպոլիաների ու տիրապետության, հանուն Կուբայի հետ համերաշխության։

Բանվորական և համադեմոկրատական շարժման ազդեցության տակ Լատինական Ամերիկայում ուժեղանում են գյուղացիների ելույթները ագրարային ռեֆորմի համար։ Դա բարենպաստ պայմաններ է ստեղծում գյուղացիական կազմակերպությունների ծագման համար։ Արդեն այդպիսի կազմակերպություններ են ստեղծվել Արգենտինայում, Մեքսիկայում, Չիլիում, Պերուում, Էկվադորում, Կոլումբիայում և Կենտրոնական Ամերիկայի մի շարք երկրներում։ Լատինաամերիկյան որոշ պետություններում օրենքներ են ընդունվել ագրարային ռեֆորմի մասին։ Սակայն դրանք չեն բավարարում գյուղացիական լայն զանգվածներին, որովհետև գյուղատնտեսության մեջ արմատական վերափոխումներ չեն նախատեսում։ Գյուղացիության պայքարը հողի համար ավելի ու ավելի է միահյուսվում մայրցամաքի բոլոր աշխատավորների համադեմոկրատական պայքարի հետ։

Դեմոկրատական վերափոխումներ իրականացնելու պահանջը, որի համար պայքարում են Լատինական Ամերիկայի ժողովուրդները, չի սահմանափակվում ինչ-որ կիսատ ռեֆորմներով։ Նրա նպատակն է արմատապես, խորապես փոխել լատինաամերիկյան երկրների սոցիալ-տնտեսական ամբողջ կառուցվածքը և հիմնականում կրում է ռևոլյուցիոն բնույթ։ Վերջիվերջո այդ պահանջի նպատակն է վերացնել իմպերիալիստների տիրապետությունը, ֆինանսական-լատիֆունդիստական օլիգարխիան և քաղաքական իշխանությունից հեռացնել ռեակցիոն ուժերին։ Հենց այդ հիման վրա է ստեղծվում Լատինական Ամերիկայի դեմոկրատական, հակաիմպերիալիստական ուժերի միասնությունը։

Վերջին ժամանակներս լատինաամերիկյան մի շարք երկրների դեմոկրատական ուժերն զգալի հաջողություններ են ձեռք բերել։ Չիլիում 1964 թվականի սեպտեմբերին տեղի ունեցած պրեզիդենտական ընտրությունների ժամանակ ժողովրդական գործողության ճակատի թեկնածուն (այդ ճակատի հիմքում ընկած է կոմունիստների և սոցիալիստների դաշինքը)՝ Սալվադոր Ալենդեն, ստացավ մոտ մեկ միլիոն ձայն և երկրորդ տեղը գրավեց քրիստոնեական դեմոկրատների թեկնածու Էդուարդո Ֆրեյից հետո, որն ստացել էր 1,5 միլիոն ձայն։

1964 թվականի սկզբներին, ազգային ուժերի ազդեցության տակ, Արգենտինայի պրեզիդենտ Իլիան չեղյալ

հայտարարեց նավթի արդյունահանման և հետախուզման վերաբերյալ ամերիկյան նավթային ընկերությունների հետ կնքված պայմանագրերը, իսկ նոյեմբերին վերացվեցին ռեպրեսիվ օրենքները։ Վենեսուելայում ազատության և ազգային անկախության համար պարտիզանական ակտիվ պայքար է ծավալել ազգային ազատագրության ճակատը, որն ընդգրկում է երկրի հակաիմպերիալիստական խոշոր ուժեր։ Ուրուգվայում հակաիմպերիալիստական պայքարը գլխավորում է Ազատագրության ձախ ճակատը (ՖԻԴԵԼ)։ Դեմոկրատական ուժերի շարժումն աճում է Կոլումբիայում, Պերուում, Էկվադորում և Պանամայում։

Պանամայի ժողովուրդը պահանջում է չեղյալ հայտարարել 1903 թվականի պայմանագրի «հավիտենական գործողության» վերաբերյալ կետը, կենսագործել Պանամայի սուվերեն իրավունքները ջրանցքի գոտում, ապառազմականացնել այդ գոտին և նշանակել ջրանցքը Պանամային վերադարձնելու հաստատ ժամկետ։ 1964 թվականի սկզբներին ամերիկյան բանակի ու ոստիկանության հետ ժողովրդի զինված ընդհարումների ժամանակ սպանվեցին 21 և վիրավորվեցին մոտ 500 մարդ։ Նոյեմբերին տեղի ունեցան բանվորների և ուսանողների նոր ցույցեր, որոնց մասնակիցները պահանջում էին չեղյալ հայտարարել Պանամայի ջրանցքի ստրկացուցիչ պայմանագիրը։ Վերջին ժամանակներս Պանաման ապրում է ԱՄՆ-ի իմպերիալիզմի դեմ ժողովրդական մասսաների չդադարող ելույթների պայմաններում։

Կոլումբիայում վերջին ժամանակներս ստեղծվել է պարտիզանական մի ամբողջ շրջան՝ Մարկետալիան, որի դեմ կառավարությունը զինված գործողություններ է կազմակերպել Ամերիկայի Միացյալ Նահանգների օգնությամբ։ Միայն 1964 թվականի օգոստոսին պարտիզանների և բանակի միջև տեղի են ունեցել 28 ընդհարումներ։ Մարկետալիայի զինված գյուղացիական շարժումը ճնշելու համար Կոլումբիայի կառավարությունն արդեն ապարդյուն ծախսել է ավելի քան 30 միլիոն դոլար։ Երկիր են ժամանում պարտիզանների դեմ պայքարի ամերիկյան զանազան «էքսպերտներ», որոնք իր ժամանակին եղել են Հարավային Վիետնամում, իսկ այժմ փորձում են Կոլումբիայի կառավարությանն օգնել նոր հարձակում նախապատրաստելու Մարկետալիայի շրջանում։ Պարտիզանների հրամանատարությունը սեպտեմբերի սկզբներին դիմեց ժողովրդին՝ կոչ անելով



միասնական ճակատ ստեղծել զենքը ձեռքին պայքարելու, որպեսզի «Կոլումբիան լինի կոլումբիացիներին, ռևոլյուցիան հաղթանակի, ստեղծվի ազգային ազատագրության դեմոկրատական կառավարություն»։

Կառավարության ռեպրեսիաների դեմ, Մարկետալիայի պարտիզանների պայքարի պաշտպանությամբ, արմատական վերափոխումների, իսկական ագրարային ռեֆորմի, դեմոկրատիայի օգտին հանդես են գալիս երկրի ժողովրդի լայն խավերը։ Պարտիզան գյուղացիների հետ միասին համերաշխության այդ շարժման ավանգարդում ընթանում են Կոլումբիայի կոմունիստները, երկրի առաջադիմական հակաիմպերիալիստական ուժերը։

Դեմոկրատական շարժման վերելքը Լատինական Ամերիկայում, հակաիմպերիալիստական ուժերի աճը, նրանց հաջողությունները առանձին երկրներում զգալի չափով հանդիսանում են կոմունիստական պարտիաների գործունեության արդյունքը։ Կոմպարտիաների, նրանց գաղափարների ու ծրագրերի շուրջը համախմբվում են ավելի ու ավելի լայն մասսաներ։ Կոմպարտիաներ կան լատինաամերիկյան բոլոր երկրներում։ Նրանք գործում են տարբեր պայմաններում։ Մի մասը գտնվում է անլեգալ վիճակում և աշխատում է խոր ընդհատակում (Բրազիլիայի, Պարագվայի, Էկվադորի, Սալվադորի, Հոնդուրասի, Վենեսուելայի կոմունիստական պարտիաները, Գվատեմալայի աշխատանքի պարտիան, Դոմինիկյան ժողովրդա-սոցիալիստական պարտիան, Հայիթիի ժողովրդական միավորման պարտիան, Նիկարագուայի սոցիալիստական պարտիան), մյուսները գտնվում են կիսալեգալ վիճակում (Մեքսիկայի, Կոլումբիայի կոմպարտիաները, Կոստա-Ռիկայի ժողովրդական ավանգարդ պարտիան), ուրիշները գործում են բացահայտորեն, օգտվելով քաղաքական պարտիաների լրիվ իրավունքներից, մասնակցում են ընտրական կամպանիաներին և ներկայացված են պառլամենտներում (Չիլիի և Ուրուգվայի կոմպարտիաները)։ Չնայած գործունեության դժվարին պայմաններին, կոմպարտիաներն ընդլայնել են իրենց ազդեցությունը, ամրապնդել կապերը մասսաների հետ, մեծացրել իրենց անդամների թիվը։ 1957 թվականից հետո ընկած ժամանակաշրջանում Լատինական Ամերիկայի երկրների կոմունիստների թիվը 200-ից հասել է 300 հազարի։ Արգենտինայի կոմունիստական պարտիայի անդամների թիվը 1956 թվականի 80 հա-

*զարից 1964 թվականին հասավ 140 հազարի, Ուրուգվայի կոմպարտիայինը՝ 3—4-ից 15 հազարի (1963 թվականին)։ Զգալիորեն մեծացել են Կոստա-Ռիկայի ժողովրդական ավանգարդ պարտիան, Սալվադորի կոմպարտիան, Պանամայի ժողովրդական պարտիան։*

*Լատինական Ամերիկայի կոմունիստները հակաիմպերիալիստական պայքարի հետագա զարգացումը գնահատելիս ելնում են այն բանից, որ անհրաժեշտ է միավորել դեմոկրատական ու հայրենասիրական ուժերի ամենալայն շրջանները։*

*Զգտելով ճնշել Լատինական Ամերիկայի երկրների ազգային ազատագրության պայքարի ուժերը, ԱՄՆ-ի իմպերիալիստները վերջին ժամանակներս սկսել են բացահայտորեն կազմակերպել զինվորական հեղաշրջումներ։ 1963 թվականին հեղաշրջումներ կազմակերպվեցին Էկվադորում, Հոնդուրասում և Դոմինիկյան Ռեսպուբլիկայում, 1964 թվականի ապրիլին՝ Բրազիլիայում։ Այդ հեղաշրջումների հիմնական նպատակն էր կանգնեցնել հակաիմպերիալիստական շարժման հզոր վերելքը։ Այդ երկրներում արգելվեց կոմպարտիաների գործունեությունը, ցրվեցին արհմիութենական, երիտասարդական և մյուս կազմակերպությունները։*

*Բոլիվիայում ռեակցիոն պրոիմպերիալիստական զինվորական հեղաշրջում կազմակերպվեց 1964 թվականին, երբ այնտեղ սկսվեց գործադուլային շարժման հզոր վերելք։ Այդ շարժմանը մասնակցում էր Բոլիվիայի բանվոր դասակարգի առավել մարտական մասը՝ հանքագործները։ Գործադուլը վերաճեց հակակառավարական ելույթների։ Գործադուլավորները պահանջում էին բարձրացնել աշխատավարձը, դադարեցնել ԱՄՆ-ի միջամտությունը երկրի ներքին կյանքին, հանքարդյունաբերությունից քշել մոնոպոլիաներր, իրականացնել դեմոկրատական վերափոխումներ։ Պրեզիդենտ Պաս Էստենսորոն արդեն չէր կարողանում կատարել ամերիկյան մոնոպոլիաների շահերի պաշտպանի իր դերը, ուստի ԱՄՆ-ը հարկադրված եղավ կազմակերպել ևս մեկ պետական հեղաշրջում և իշխանության գլուխ կանգնեցնել զինվորականներին։*

*Իսկական ազգային ազատագրության, դեմոկրատիայի և սոցիալական առաջադիմության համար Լատինական Ամերիկայի ժողովուրդների պայքարն ավելի ու ավելի սուր ձևեր է ընդունում։ Մայրցամաքում իմպերիալիստական մոնոպոլիաների տիրապետության օրերը հաշված են։ Ժողովուրդները կհասնեն իրենց լիակատար ազատության։*

*Մ. ԿՈՒԴԱՉԿԻՆ*



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Պարտիան և կառավարությունը անդադրում հոգ են տանում ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման մասին

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ա. Ն. ԿՈՍԻԳԻՆ.—1965 թվականին ժողովրդի կենսամակարդակը բարձրացնելու միջոցառումների մասին, *ՍՍՌՄ վեցերորդ գումարման Գերագույն սովետի հինգերորդ սեսիայում տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 10-ի համարում։*

Վ. Ֆ. ԳԱՐԲՈՒԶՈՎ.—Ժողովրդի կենսամակարդակի բարձրացման միջոցառումների ծախսերը, *ՍՍՌՄ վեցերորդ գումարման Գերագույն սովետի հինգերորդ սեսիայում տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 11-ի համարում։*

Հանուն մարդու, ի բարօրություն ժողովրդի, *«Պրավդա» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 15-ի համարում։*

Ա. Ե. ՔՈՉԻՆՅԱՆ.—1965 թվականին ժողովրդի կենսամակարդակի բարձրացման միջոցառումների մասին, *Հայկական ՍՍՌ վեցերորդ գումարման Գերագույն սովետի չորրորդ սեսիայում տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 24-ի համարում։*

Ա. Կ. ՇԵԿՈՅԱՆ.—Ժողովրդի կենսամակարդակի բարձրացման միջոցառումների ծախսերը, *Հայկական ՍՍՌ վեցերորդ գումարման Գերագույն սովետի չորրորդ սեսիայում տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. դեկտեմբերի 24-ի համարում։*

Հանուն պետության, ժողովրդի շահերի, *«Պրավդա» թերթի խմբագրականը, տպագրված «Ս. Հ.»-ի 1965 թ. հունվարի 7-ի համարում։*

## 2. Հասնենք համաշխարհային լավագույն ստանդարտների մակարդակին

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Հետևենք մոսկվացիների և լենինգրադցիների օրինակին, *«Ս. Հ.»-ի 1965 թ. հունվարի 10-ի առաջնորդողը։*

Արձագանքում են մոսկվացիների և լենինգրադցիների նախաձեռ-

նությանը, նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1965 թ. հունվարի 8-ի և 9-ի համարներում։

Նշանաբանն է՝ բարձր որակ և հուսալիություն, նյութեր, տպագրված «Երեկոյան Երևան» թերթի 1965 թ. հունվարի 11-ի համարում։

### 3. Կազմակերպված անցկացնենք անասունների ձմեռային շրջանը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Անասնապահների ձմեռային հոգսերը, «Ս. Հ.»-ի 1965 թվականի հունվարի 6-ի առաջնորդողը։

Մսատու մատղաշը աճեցնել կարճային շրջանից, հոդված, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1964 թ. 12-րդ համարում։

Անթերի կիրառել անասնաբուժա-սանիտարական միջոցառումները, հոդված, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1964 թ. 12-րդ համարում։

### 4 Գյուղատնտեսական մեքենաների ու գործիքների վերանորոգումը կատարենք ժամանակին և որակով

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սերմնատար խողովակների վերականգնումը, հոդված, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1965 թ. առաջին համարում։

Նորոգման ագրեգատային մեթոդի առավելությունները, հոդված, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1964 թ. 12-րդ համարում։

Բարձրորակ և խնայողաբար նորոգման նախապայմանը, հոդված, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1964 թ. 11-րդ համարում։

### 5. Աճում և ամրապնդվում է սոցիալիստական երկրների եղբայրական համագործակցությունը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.—Հոկտեմբերյան ռևոլյուցիայի չորսամյա տարեդարձի առթիվ, *Երկեր*, հ. 33, էջ 37—48։

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը, էջ 23—31, 161—166, «Հայաստան» հրատարակչություն, 1964։

Եղբայրական համագործակցության օրգանը, հոդված, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1965 թ. առաջին համարում։

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

«Հայաստան» հրատարակչությունը լույս է ընծայել.

ԵՐՎԱՆԴ ՍԱՐԳՍՅԱՆ.— «Թուրքիան և նրա նվաճողական քաղաքականությունը Անդրկովկասում (1914—1918 թթ.)»։ Մենագրությունում արխիվային բազմաթիվ փաստաթղթերի, օտար աղբյուրների և հատկապես թուրքերեն լեզվով լույս տեսած գրականության հիման վրա լուսաբանվում է օսմանյան կայսրության ներքին դրությունը առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին ու պանթուրքիզմի գաղափարախոսության ագրեսիվ բնույթը։

Գրքում զգալի տեղ է հատկացված 1918 թվականին Անդրկովկաս կատարած թուրքական արշավանքին, առաջին համաշխարհային պատերազմում օսմանյան կայսրության կրած պարտության պատճառներին և թուրք զավթիչների դեմ Անդրկովկասի ժողովուրդների մղած պայքարի պատմությանը։ Գինը՝ 84 կոպ., տպաքանակ՝ 15.000։

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ.— «Քարավանները դեռ քայլում են»։ Բանաստեղծուհի Ս. Կապուտիկյանի այս գիրքը արդյունք է Միջին Արևելքի հայաշատ երկրները՝ Լիբանան, Սիրիա, Եգիպտոս հեղինակի կատարած ուղևորության։ Գիրքը, ճամփորդական նոթեր լինելուց բացի, պատկերում է սփյուռքահայության կյանքն ու ամենօրյա պայքարը հեռավոր ափերի վրա պահելու ոչ միայն ֆիզիկական գոյությունը, այլև հայրենի մշակույթը, լեզուն։ Պատմում է նաև այն անսահման սիրո մասին, որ կա արտասահմանում մայր հայրենիքի՝ Սովետական Հայաստանի հանդեպ։ Գինը՝ 86 կոպ., տպաքանակ՝ 20.000։

ՄԻԽԱՅԻԼ ՅԵՆՅԻՊԵՐ.— «Զրույց կյանքի մասին»։ Գրքի նպատակն է պատմել մարդու կյանքի գիտական հիմունքների մասին, մատերիալիստական ֆիզիոլոգիայի տեսանկյունով բացատրել մեր առօրյա կյանքի երևույթները։

Դուք այստեղ չեք գտնի սովորաբար հրամցվող դեղատոմսեր, թե «ինչպես պետք է կանոնավոր ապրել», բայց տեսական և գործնական տեղեկություններ տալով մարդու օրգանիզմի մասին, ֆիզիոլոգիորեն բացատրելով կյանքի երևույթները, գիրքը կօգնի ձեզ հասկանալու, թե ինչպես կարելի է ավելի լավ կազմակերպել ձեր աշխատանքը, հանգիստը, սնունդը, անձնական կյանքը, ինչո՞ւ են վնասակար ավելորդությունները, ինչպես են դրանք ազդում ֆիզիոլոգիական պրոցեսների ընթացքի վրա։ Գինը՝ 63 կոպ., տպաքանակ՝ 5.000։

Ինդեքս 77704

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 2

## 1965

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ՎՖ 01301 Պատվեր 91 Տիրաժ 9233

Հանձնված է արտադրության 13/I 1965 թ.։
Ստորագրված է տպագրության 20/I 1965 թ.։

ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի
պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության II տպարան.
Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 8 կոպ.։